բանադատուամով: Քանի մը վայրկեանէն դուք պիտի մերժէք ծրագիրը: Ցետոյ ի՞նչ պիտի ընէք: Պէտք է ընել բան մը որ գիժանայ, տեսէք: Երկիրը չի կրնար այսպէս ապրիլ: Ի՞նչ լուծում կ'առաջարկէք, մերժելով մեր ծրագիրը: Իրա - կանութիւնը մէջտեղն է: Ծախքերը մէջտեղն են,— 50 միլիառ ֆրանք, որոնց 35 միլիառը պէտք է վճարել: Ոը եւ է փոխառութիւն չի կրնար բաւել այս պահանջներուն: (Այստեղ վարչապետը կարդաց «Թայմզ»ի մէկ յօդուածը, որ կ'ըսէր թէ Լէոն Պլում պիտի չկրնայ ընդունիլ տալ իր ծրագիրը, բայց անոր մէկ կարեւոր մասը պիտի իւրացուի իր յաջորդներուն կողմէ :

— Այո՛, այո՛, բացագանչեցին քանի մը ծերակուտականներ :

— Ուրեմն անծի խնդի՞ր ունիք, պոռաց Լէոն Պլում, զայրացած :

— Այո, այո՛, պատասխանեցին աջէն.

— Ձեզ ուղեր հաւատալ, հեգնեց Լէոն Պլում: Ես կ'ուզեմ հաւատալ թէ դուք անհամբերութեան նոպայէ մը բռնուած էք :

## «ԵԹԷ ՀԱՐԿ ԸԼԼԱՐ ԹԱԳԱՒՈՐ ՄԸ ԸՆՏՐԵԼ ...»

Վարչապետը պարզեց նաեւ քաղաքական կացութեան վտանգները, եւ սպառնալիք մըն ալ ուղղեց .

— « Թերեւս կ'ուզէք տապալել մեծամասնութիւնը: Հաւատացէք ինծի, կացութիւնը այն չէ ինչ որ 1926ին եւ 1934ին: Ժողովրդական ճակատին մեծամասնութիւնը շատ ամուր է, հաստատուած՝ շատ խոր հիմերու վրայ եւ դուք չէք կրնար ճեղքել զայն: Անշուշտ կրնաք փոփոխութիւն մը մաղթել, սակայն դուք իրաւունք չունիք վճիռ արձակելու: Այդ վճիռը կը պատկանի ընդհանուր քուէարկութեամբ ընտրուած Ժողովին. (բուռն բողոքներ):

Այստեղ ծերակոյտին նախագահը իր թղթահատը դպցնելով Լէոն Պլումի ուսին, յայտարարեց .

— « Գիտցէք որ ծերակոյտը հանրապետութեան մէկ ընդհ. ժողովն է: Դուք այժմ իսկ կրնաք ձեր ուզած եզրակացութիւնները հանել անոր որոշումներէն, բայց իմացէք որ մենք խորհրդակցութիւն կը կատարենք ազատօրէն :

Այս խօսքերուն յաջորդեցին ծափերու տեղատարափ մը եւ բողոքներ: Լէոն Պլում այնպէս որ ժխորը դադրի, որպէսզի կարենայ շարունակել ճառը: Ծանրակշիռ էին իր վերջին խօսքերն ալ.

— « Ցաճախ դուրս ելլելով իր դերէն, Ծերակոյտը կը խանգարէ երեսփ. Ժողովին որոշումները: Դուք մինչեւ ծայրը կը տանիք սահմանադրութեամբ ձեզի տրուած իրաւունքները: Դուք միայն ծրագիրը չէք մերժեր, կը գլխատէք զայն »:

Կարգը եկած էր Պ. Քայեոյի որ առաջին խօսքէն իսկ ազդարարեց .

— « Դուք արձանագրութեան գիւանի մը տե՞ղ կը դնէք մեր Ժողովը»:

Այնուհետեւ բուռն բանավէճ մը տեղի ունեցաւ երկուքին միջեւ, սահմանադրական իրաւունքներու մասին: Տեղ մը Լէոն Պլում գիտել տուաւ, խօսքն ուղղելով նախկին վարչապետին.

— 1926ին, դուք օրինագիծ մը մշակած էիք, որ կը տրամադրէր տուրք հաստատել դրամագլուխին վրայ :

— Այո՛, պատասխանեց Քայեօ, եւ այն ատեն դուք ըսիք թէ կը նախընտրէք թագաւոր մը ունենալ, քան այդ իրաւասութիւնները տալ ձեզի :

Լէոն Պլում.— Այսօր ալ, եթէ ինծի մնար ընտրութիւն մը կատարել ձեր եւ թագաւորի մը միջեւ, նորէն պիտի խորհէի այդ մասին ...

Բանավէճը աւելի սաստկացաւ եւ Պ. Քայեօ վերջացնելով իր ճառը, յիշեց նաեւ նախորդ օրուան ցոյցը եւ յրագրական պայքարները «որոնք չեն կրնար հանել մեր արհամարհանքին բարձրութեան»:

Այդ պահուն երկու ընկերվարական երեսփոխաններ, որոնք ունկնդիրներու ամպիոնը կը գտնուէին, դրգռիչ կանչեր արձակեցին:

— Գլուխ իշխանութեան գլուխ, Քայեօն՝ դէպի Վէնսէն (կառափնատ)...

Անկցի՛ ծերակոյտը...

Ծերակոյտին նախագահը անմիջապէս դուրս հանել տուաւ երկու երեսփոխանները: Ցետոյ տեղի ունեցաւ քուէարկութիւնը: Դուրսը, բակին մէջ, յուսանքները շարունակուեցան եւ կռուիներ ալ փոխանակուեցան, բայց զինուորական հրամանատարը անմիջապէս վերահաստատեց բարեկարգութիւնը:

## ՋԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԳՈՐԾԱԴՈՒԼՆԵՐԸ կը շարունակուին Փարիզի մէջ: Առջի օր տասը նոր հաստատութեանց բանուորներն ալ գործադուլ հռչակեցին, 34ի հասցնելով փակուած գործարաններուն թիւը: Մէջն է նաեւ Իսփանօ-Սուիզան, որ պաշտպանութեանց չինութեամբ կը զբաղի: Բանթողներուն թիւը անցած է 60 հազարը: Գործատէրերը բացարձակ պայման կը դնեն որ գործարանները պարպուին, որպէսզի հաւանին բանակցիլ:

ԱՒԵԼԻ ՔԱՆ 5000 ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐ խռնուած են Սպանիոյ սահմանագլուխին վրայ եւ հետզհետէ Ֆրանսա կը մտնեն: Կռիւները կը շարունակուին նոյն սաստկութեամբ Ազգայնականները գրաւեցին Գարսելոնայի ելեկտրական ուժի կեդրոնը :

ԹՈՒՐՔԻՈՅ արտաքին գործավարը, Թ. Ր. Արաս, Աթէնք հանդիպեցաւ, Եգիպտոս երթալու համար: Այս առթիւ կարեւոր խորհրդակցութիւն մը ունեցաւ Ցունաստանի վարչապետին հետ :



ԼՈՅՍ ՏԵՍԱՒ



ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՍԷՆ ԼՈՒ (Մարսէյլ) — Ընտանիքս եւ բոլոր պարագաներուս հետ խորին շնորհակալութիւնս կը յայտնեմ Մարսէյլի առաջն. փոխանորդ Գեր. Տ. Զգօն Վրդ. Տէր Ցակոբեանի, Կրօն. Ժողովի քահանայ հայրերուն, երեսփ. Ժողովին, Ազգ. Կեդր. Վարչութեան, Ս. Թարգմանչաց մայր եկեղեցւոյ վարչութեան, բոլոր Թաղ. Խորհուրդներու, Մարսէյլի, Ալժերիոյ, Թունուզի եւ Աֆրիկեան Տրիպոլսոյ ազգ. մարմիններուն, Ցարօն - Տուրուբերանի նահանգային վարչութեան եւ մասնաճիւղերուն, Վասպուրականի, Սալոնյենի, Քղիի, Կարնոյ եւ Ուրֆայի Հայր. Միութեանց, Հ. Ց. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէին, Ֆր. Կ. Խաչի Մարսէյլի վարչութեան եւ մասնաճիւղերուն, Ռամկավար եւ Հնչակեան մասնաճիւղերուն, Բարեգործականի մասնաճիւղին, Աղքատախնամին, մամուլին, եւ բոլոր այն կուսակցութեանց եւ միութեանց որոնք անձամբ, նամակներով եւ հեռագիրներով իրենց ցաւակցութիւնը յայտնեցին եւ մասնակցեցան թաղման, որոնք մինչեւ այսօր կ'ողբան կորուստը չորս անչափահաս զաւակներու մօրը :

Եղիշէ Քհնյ. Մխիթարեան


Imprimerie A. DER (AGOPIAN)

Le Gérant : ... STEPHAN

17, Rue ... — PARIS [10]

# ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՕՐԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ **Palais des Congrès**ի ՄԷՋ ՄԱՅԻՍ 7ԻՆ

ները ճաշի հրաւիրած էր Վինարոզի մէջ։ Միեւնոյն ատեն ազգայնական օդանաւերը Թռուցիկներ ցրուած էին հանրապետական շրջաններու մէջ, ազդարարելով թէ Զատկի պատարագը պիտի վայելեն Միջերկրականի ափերուն վրայ։

Զանազան աղբիւրներէ կը հաղորդեն թէ Վինարոզի 13.000 բնակիչներէն միայն 400 հոգի մնացած էին քաղաքին մէջ, ազգայնականները դիմաւորելու համար։ Գերիներու թիւը կը հաշուեն 2180 հոգի։

*** Նոր փախստականներ կը սպասուին Ֆրանսայի մէջ։ Արեւելեան Պիրենեաններու ֆրանսական իշխանութիւնները խոստացուցին հակողութիւնը, 100 ժողոն տարածութեան վրայ։

*** Սպանիա 1400 միլիոն ֆրանքի ոսկի ունի Պանք տը Ֆրանսի մէջ։ Տեղական թերթերը կը գրեն թէ հանրապետական կառավարութիւնը կ'ուզէ ետ առնել զայն։

## ՁԱՆԱՁԱՆՆԵՐՈՒՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԱՆԳԼԵՒԻՏԱԼԱԿԱՆ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԻՒՆԸ ստորագրուեցաւ Հռոմի մէջ, երէկ, 16 ապրիլ։ Բնագիրը պիտի հրատարակուի երեքշաբթի օր։

Գ. ՏԱԼԱՏԻԷ եւ արտաքին նախարարը, Գ. Ժոռժ Պոնէ, Լոնտոն հրաւիրուած են պաշտօնապէս, ապրիլ 27ին, կարգ մը խորհրդակցութիւններ կատարելու համար։ Այս առթիւ իտալական թերթերը կը գրեն թէ միութիւն պիտի հաստատուի անգլիական եւ ֆրանսական բանակներուն միջեւ, մէկ հրամանատարութեամբ։

ԱՆԲԱՂՋԱԼԻ ՕՏԱՐԱԿԱՆՆԵՐՈՒ դէմ խիստ միջոցներ ձեռք առնուեցան Անգլիոյ մէջ։ Ապահովութեան ոստիկանութիւնը հետապնդումներ կը կատարէ մասնաւորապէս Լոնտոնի եւ Ծովեզերեայ քաղաքներու մէջ։

ԹՈՒՆՈՒԶԻ ազգայնական կազմակերպութիւնը՝ Նոր-Տէսթուր, լուծուած ըլլալով, բազմաթիւ ձերբակալութիւններ կատարուեցան։

ՌՈՒՄԱՆԻՈՅ մէջ քաղաքական բոլոր կուսակցութիւնները լուծուած ըլլալով, հրամանագիր մը հրատարակուեցաւ որ կ'ազդարարէ թէ կառավարութիւնը կրնայ ուղած ատենը արգիլել որ եւ է թերթ կամ հրատարակութիւն որ կապ ունի քաղաքական կուսակցութեան մը հետ։ Ներքին նախարարը կրնայ այլուր բնակիլու դատապարտել, վեց ամիսէն մինչեւ մէկ տարի, ո եւ է անձ որ ազօրէն գործունէութիւն կը փորձէ։ Վերջապէս, անոնք որ արտասահմանէն նըպաստ կը ստանան քաղաքական գործունէութեան համար, ենթակայ են շատ ծանր պատիժներու.— երկուքէն հինգ տարի բանտարկութեան։

ԼՈՆՏՈՆԻ ՇԱՐԺԱՆԿԱՐԻ մեքենավարները գործադուլ հռչակեցին։

ԱԶԳ. ՊԱՐԳԵՒԱԽԱՂԻ 4րդ շարքին վիճակահանութիւնը պիտի կատարուի Մայիս 2ին, Սալ Փլէյէլի մէջ (Փարիզ)։

ՄՈՍԿՈՒԱՅԷՆ հասած լուրերու համաձայն, Ձեկան հետապնդումներ կը կատարէ, երեւան հանելու համար դաղտնի ատոմ մը, որ հակախորհրդային լուրեր կը հաղորդէր։ Ձերբակալուած են 27 բանուորներ որոնք իբրեւ թէ լըսած էին այդ ձայնասփիւռը։ — Փոյթամայի ելեկտրական մեծ գործարանները մոխիր դարձան հրդեհի մը հետեւանքով։

## Հ. Յ. Դ.

**Փարիզ**

ԹԵՏԱՌՋԳՈՒԱԾ ԼԵՓԱՐԻՋԻ Հ. Յ. Դ. Պրոպականտի Յանձնախումբի Ապրիլ 18ի ժողովը։

ԱԼՖՈՐՎԻԼԻ «Մ. Մինասեան» ենթակոմիտէին ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները 19 Ապրիլ Երեքշաբթի երեկոյ ժամը 9ին, Հայ Ակումբին մէջ։ Կարեւոր օրակարգ։

**Դեսպար**

Ավինեոնի «Տուրատա» խումբը ժողովի կը հրաւիրէ Ավինեոնի եւ Ցէն Սաթուրնենի ընկերները 18 Ապրիլ երկուշաբթի ժամը 6ին փիժոնէի սրահը։ Կարեւոր օրակարգ։

ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. Փրոփականտի Յանձնախումբի ընդհանուր ժողովը 20 Ապրիլ չորեքշաբթի երեկոյ ժամը 8,30ին «Շաքրիկեան» սրահին մէջ։ Կարեւոր օրակարգ։ Ներկայ կ'ըլլայ ընկ. Գ. ՀԻՒՍԵԱՆ։

Ֆ. Կ. ԽԱՉԻ Փարիզի Մասնաճիւղը մեծ պատրաստութեամբ կը տօնէ «Կ. Խաչ Օրը» Մայիս 8ին։ Կը խնդրուի չխոչընդոտել այդ թուականը։

## Matinée Prolongée

«ՀԱՅ ԱՐԾԻՒ» «Aigle d'Arménie» ԱԿՈՒՄԲԻՆ ԿՈՂՄԷ

24 Ապրիլ Կիրակի կէսօրէ վերջ ժամը 16էն մինչեւ կէս գիշեր

HOTEL NAPOLEON BONAPARTEի շքեղ սրահներուն մէջ

Avenue Friedland, Paris, metro Etoile

Հաճելի ժամանց, անընդհատ պար։ Պիւֆէ ժողովրդական գիներով։

Մուտք 15 ֆրանք

## ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԴԵՐԱՍԱՆՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ

երկու յաջորդական ներկայացում օրեր Սոսիէթէ Սավանթի մէջ

17 եւ 18 Ապրիլ, Զատկի Կիրակի եւ Երկուշաբթի օրերը կէսօրէ վերջ ժամը 3ին կը ներկայացուի

## ԱԽ ՍԱԿՆԻԿՍ

(օփերէթ 3 արար)

Կը մասնակցին՝ Տիկ. Ս. ՓԱՂՏԱՍԱՐԵԱՆ, Տիկ. Յ. ԼԱԹԻՖԵԱՆ, Գ. Գ. ՓԱՂՏԱՍԱՐԵԱՆ, ԼԱԹԻՖԵԱՆ, ՍԱՐՈՖԵԱՆ, Կ. ՍՐԱՊԵԱՆ, ՍԱՆՃԱՔ, Կ. ԳԱՆԹԱՐՃԵԱՆ եւ խումբին բոլոր անդամները։ Ընտիր օրքէսթր՝ ղեկավարութեամբ Մ. ԲԱՐԻԿԵԱՆի։ Գիները՝ սովորական։ Տոմսերը՝ ծանօթ տեղեր եւ գրասենեակ ՀՐԱՆՏ ՍԱՄՈՒԷԼ։

## ՖՈՒԹՊՈԼԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹՈՒՐՆՈՒԱ

Զատկի առթիւ, երկու օր, Կիրակի 17, Երկուշաբթի 18 Ապրիլ

Stade Italieի մէջ 72, Bou Carnot, Paris-12e

Կը մասնակցին Փարիզի 4 լաւագոյն ատաք խումբերը՝ Հ. Մ. Ը. Մ., Իտալացի, Չէխ եւ Ռուս։

Յաղթական խումբը կը շահի արժէքաւոր բաժակ մը նուիրուած «Gancia» ախորժաբերի կողմէ։

Մրցումները տեղի պիտի ունենան հետեւեալ կերպով՝

Կիրակի 17 Ապրիլ ժամը 14ին Ռուսերը ընդդէմ Չէխերու

» » » » 16ին Հ. Մ. Ը. Մ. ընդդէմ Իտալացիներու

Երկուշաբթի 18 Ապրիլ ժամը 14ին պարտուող խումբերը իրարու դէմ

» » » » 16ին յաղթական խումբերը »

Հաղորդակցութեան միջոցներ. Métro Porte Dorée, Autobus P.C., A.U., 81.

## ԿԱՐԵՒՈՐ

Ձեր բնակարանը, շէնքը եւայլն ներկել եւ ճոխակաւոր ներկելու, պատի թուղթեր փակցնելու եւ նորոգութիւններու համար դիմեցէք նամակով՝

S. GRÉGOIREի, 1bis, Rue Rouget de l'Isle, Choisy-le-Roi Seine.

Խղճամիտ եւ մաքուր աշխատանք՝ չափաւոր գիներով։

## Զ. Ո. ՄԻՈՒԹԻՒՆԸ ԿԸ ՏՕՆԷ

## ԱՊՐԻԼ ՏԱՍՆԸՄԷԿԸ

ՓԱՐԻԶ, 24 Ապրիլ, Կիրակի երեկոյ ժամը 8.30ին

ՍԱԼ ԿԱՎՕ

Կ'ԽՕՍԻ **ՕՐ. ՀՌԻՓՍԻՄԷ ԹՈՐՈՍԵԱՆ**

Մանրամասնութիւնները մօտ օրէն։ Տոմսերը կը ծախուին ՅԱՌԱՋ-ի Հրատարակչատան գրասենեակը եւ Զ. Ո. Միութեան անդամներուն մօտ։ Այժմէն ապահովել տոմսերը։



## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Ֆլոտ Գաբրիէլեան, հօր անունը՝ Նշան։ 1923ին Պոլսէն մեկնած է Թունուզեան։ կարծողներ կան թէ քանի մը տարի առաջ Թունուզեանէն մեկնած է վ առնա (Փուկարիա)։ Իր մասին լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել իր եղբօր՝ Ժան Հասցէին. Direct, 8 rue Paul Bert, Lyon, (Rhône) France.

## ՆՈՒԷՐԱՏՈՒՓ

27 մարտ — 8 ապրիլ

ՇԱՍ, Գ. Ա. — 25։
ՓԱՐԻԶ (19), Տիկ. Աճ. — 105։
ՄԱՐՍԷՅԼ, Ա. Գ. — 27։
ՔՐԷՄԸԼԻ, Հ. Նոտ. Եղբ. — 75։
ՏՐԱԿԻՆԵԱՆ, Ե. Թ. — 40։
ՓԱՐԻԶ, Մ. Գ. — 75։
ՍԷՆ ԺԵՐՄԷՆ ԱՆ ԼԷ, Սեյ. — 105։
ՎԻԷՆ, Ս. Ար — 150։
ԹՈՒԼՈՆ, Խ. Եղ. — 150։
ՓՈՆ ՍԷՆԹ ԷՍՓՐԻ, Ս. Յով. — 75։
ՄՕՐԵՍԹԷԼ, Գարս. — 40։
ԱՈՒՍԹ, Ա. Ք. — 10։
ՎԵԼԵՋԻ, Յ. Սար. — 75։
ՔԱՆ, Աստ. — 40։
ՄԱՐՍԷՅԼ, Եր. Փ. — 50։
ԼԻՈՆ, Ռեզ. — 150։
ՓԼԷՍԻՍ ՌՈՊԻՆՍՈՆ, Լ. Գ. — 40։
ՄՈՒՋԵՎԻԼ, Գ. Մ. — 150։ Վճարէ-ցինք։
ՈՒԱՐՋԱԶԱԹ, Քրիստ. — 50։
ԺՈՒԱՆ ԼԷ ՓԷՆ, Իշխ. Ա. — 40։
ԱՓԹ, Ա. Քէշ. — 75։
ԼԻՈՆ, Յ. Վ. — 180։
ՓՐԱՎԱՆՇ, Տէմիր — 150։




Le Gérant : H. STEPHAN

17, Rue Dameame, PARIS (13) A. DER (AGOPIAN)

